Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք։



ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈՒԼԻՍ 13 1961

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն — Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, Հեռախոս՝ 2—52—78։






193

# 1961 ԹՎԱԿԱՆԻ ՄԵՐ ԲՆԱԳԾԵՐԸ








# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*Օրեցօր ավելի ու ավելի է ծավալվում նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը ռեսպուբլիկայի գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում: Որքան մոտենում է ՍՄԿՊ XXII Համագումարի բացման ցանկալի օրը, այնքան կրկնապատկվում ու բազմապատկվում են մեր հաջողությունները յոթնամյակի երրորդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու գործում: Այժմ սոցիալիստական մրցության ամեն մի մասնակից՝ բանվոր, թե կոլտնտեսական, ինժեներ, թե գիտնական, համակված է միայն մեկ ցանկությամբ՝ պատվով կատարել ստանձնած պարտավորությունները և հարազատ Կոմունիստական պարտիայի համագումարը դիմավորել նոր հաջողություններով: Ահա թվեր և փաստեր այդ մասին:*

*Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերու-*

թյունը հունիսի 26-ին կատարեց համախառն արտադրանքի թողարկման կիսամյա պլանը։ Արդյունաբերական արտադրության ծավալը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է գրեթե 10 տոկոսով։ Գերակատարված են ալյումինի, գլոված պղնձի, ծծմբաթթվի, հանքային պարարտանյութերի, ավտոդողերի, ցեմենտի, շիֆերի, մետաքսե գործվածքեղենի և արտադրանքի շատ ուրիշ տեսակների թողարկման պլանները։

Կիսամյակի արտադրական պլանը ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով է կատարել Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը։ Պլանները գերակատարելու հետ միասին գործարանի կոլեկտիվը տնտեսել է 800 տոննա հիմնական հումք, 600 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և ավելի քան երկու հազար տոննա վառելանյութ։

Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանի կոլեկտիվը նախատեսված ժամկետից 4 օր շուտ կատարել է իր կիսամյա արտադրական պլանը։ Այստեղ նախահամագումարյան մրցության շատ առաջավոր-



ներ իրենց պլանները կատարում են 120—125 տոկոսով։

Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը յուրացրել է նոր գեներատորի արտադրությունը և սկսել նրա մասսայական թողարկումը։

Երևանի Շահումյանի շրջանի Սովետաշեն ավանի տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվը ժամկետից շուտ է կատարել կիսամյակի արտադրական պլանը և խոստացել մինչև տարվա վերջը պլանից դուրս թողարկել 100 հազար ռուբլու արտադրանք, ֆաբրիկայում առաջին տեսակի տրիկոտաժեղենի թողարկումը հասել է 84 տոկոսի։

Երևանի 26 կոմիսարների շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները յուրացրել և այժմ թողարկում են արդյունաբերական արտադրանքի 14 նոր տեսակներ, ստեղծվել են 13 ավտոմատ գծեր, տեղակայվել 50 միավոր բարձր-արտադրողական սարքավորումներ, մոդեռնացվել տասնյակ հաստոցներ և արտադրության մեջ ներդրվել նորարարական 300 առաջարկ։

Ռեսպուբլիկայի շինարարության և շինանյութերի արդյունաբերության 362 բրիգադաներ, որոնցում աշխատում են 4·420 հոգի, պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման արժանանալու համար։

Լենինականի գուլպայի ֆաբրիկայի կոլեկտիվը գերակատարել է կիսամյակի պլանը, պլանից դուրս երկրին տալով 150 հազար զույգ գուլպա։

Ղափանի պղնձահանքային կոմբինատի կոլեկտիվը ժամկետից 20 օր շուտ է կատարել կոնցենտրատի թողարկման կիսամյակի պլանը։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 11,7 տոկոսով, տնտեսվել է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա։

Լենինականի հղկող հաստոցների գործարանում միայն երեք ամսում արտադրության մեջ ներդրվել է գյուտարարական և ռացիոնալիզատորական 33 առաջարկություն։ Այդ առաջարկություններից գործարանը տարեկան կշահի 3·750 ռուբլի։



Արթիկտուֆի հանքերի Պեմզաշենի երրորդ և չորրորդ տեղամասերի կոլեկտիվները ժամկետից 16 օր շուտ են կատարել կիսամյակի պլանը, երկրին տալով 107.460 խորանարդ մետր քար։

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոլեկտիվը գերակատարել է կիսամյակի պլանը։ Այստեղ մրցության մի շարք առաջավորներ իրենց օրական առաջադրանքը 150 տոկոսով են կատարում։

Լենինականի մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի շատ ցեխեր ու բրիգադաներ, բազմաթիվ բանվորներ ու բանվորուհիներ, ժամկետից շուտ կատարելով առաջին կիսամյակի պլանները, այժմ աշխատում են երկրորդ կիսամյակի հաշվին։

Եղեգնաձորի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները կատարել են պետությանը ձվի վաճառքի տարեկան պարտավորությունը։ Նախատեսված 550 հազարի փոխարեն պետությանը վաճառված է 635 հազար ձու։

Իջևանի շրջանի Ծաղկավան գյուղի կոլտնտեսությունը կատարել է պետությանը

կաթ վաճառելու տարեկան պլանը։ Վաճառ-
ված է 521 ցենտներ կաթ։ Նույն կոլտնտե-
սությունը բրդի վաճառքի պլանը կատարել է
168 և ձվինը 143 տոկոսով։

Վեց ամսում Շահումյանի շրջանի Ն.
Զարբախի կոլտնտեսության կթվորուհի Զ.
Սահակյանը ամեն մի կովից ստացել է ա-
վելի քան 2.200 կիլոգրամ կաթ։ Ի պատիվ
ՍՄԿԿ XXII համագումարի նա խոստացել է
այս տարի գերազանցել անցյալ տարվա ցու-
ցանիշները։

Ղուկասյանի շրջանի Ղազանչիի սով-
խոզն անցյալ տարվա համեմատությամբ
1.200 ցենտներ կաթ ավելի է արտադրել։
Յայլաղ բարձրանալուց հետո, ամեն օր 2—
3 հազար լիտր կաթ ավելի է ստացվում։

Ձվի արտադրության տարեկան պլանը
վեց ամսում է կատարել Եղեգնաձորի շրջանի
Ելփին գյուղի կոլտնտեսությունը։ Նախա-
տեսված էր 1961 թվականին արտադրել 75
հազար ձու։ Միայն անցյալ վեց ամսում այդ
թիվը հասավ ավելի քան 87 հազարի։

Ավարտվել է Սիսիանի շրջանի Բռնա-
կոթ գյուղի կոլտնտեսության ջրամբարի կա-
ռուցումը, որը կոռոգի 100 հեկտար ցանք։



Գյուղատնտեսության մեքենայացման
և էլեկտրիֆիկացիայի հայկական գիտահե-
տազոտական ինստիտուտում մշակվել է
կուլտիվատորի մի նոր հարմարանք, որը
զգալիորեն բարելավում է քառակուսի-բնա-
յին ցանքերի մշակությունը։ Տեխնիկական
այս նորամուծության հեղինակն է ավագ
գիտաշխատող Շ. Գրիգորյանը։

Ամասիայի շրջանի կոլտնտեսություն
ները գերակատարել են պետությանը միս և
կաթ վաճառելու կիսամյա պլանը։ Մթերա-
կայան են հանձնվել միջակ և միջակից
բարձր գիրության անասուններ։

Նույն շրջանի Գյուլլի գյուղի կոլտըն-
տեսությունը պետությանը 1.226 ցենտներ
կաթ հանձնելու տարեկան պարտավորու-
թյունը կատարել է հունիս ամսին. կոլ-
տնտեսությունը գերակատարել է նաև պե-
տությանը միս վաճառելու կիսամյա պար-
տավորությունը։

Ղուկասյանի շրջանի Իլլի գյուղի կոլ-
տնտեսությունը նախատեսված 47 ցենտնե-
րի փոխարեն պետությանը վաճառել է 56
ցենտներ միս։ Այդ հաջողությանը նրանք
հասել են անասունների բտումն ու արոտա-

յին գիրացումը լավ կազմակերպելու շնորհիվ։

Կիրովական քաղաքում մինչև այս տարվա հունիս ամիսը արդյունաբերական ձեռնարկություններից հանվել են 115 հնացած սարքավորումներ և դրանց փոխարեն դրվել 171 նոր սարքավորումներ։ Այդ նույն ժամանակաշրջանում յուրացվել է արդյունաբերական արտադրանքի 27 նոր տեսակ։

Սպիտակի շրջանի Կաթնաջուր գյուղի կոլտնտեսությունը 7 ամիս շուտ է կատարել պետությանը կաթ վաճառելու պլանը։ Կոլտնտեսությունը հինգ ամսվա ընթացքում արտադրել է 214 ցենտներ միս, նախատեսված 190 ցենտների դիմաց։

Նախահամագումարյան մրցությունը ռեսպուբլիկայում բուռն թափով շարունակվում է։





## ԱԳԻՏԱՏՈՐ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Երիտասարդը գլուխը բարձրացրեց թերթից, բայց կարծես շարունակում էր կարդալ, մտքում կրկնում էր սրտին մոտ, իր սրտից ասված խոսքեր. «Արտադրության երիտասարդ աշխատավոր, մասնակցելով նախահամագումարյան մրցությանը, աշխատիր այնպես, որ համագումարին ուղղված համաժողովրդական զեկույցի մեջ քո գործերի մասին էլ մի տող գրվի, ինչպես որ բազմաթիվ առվակներից ու աղբյուրներից հորդահոս գետեր են առաջանում, այնպես էլ բոլոր երիտասարդ աշխատավորների ջանքերով կստեղծվի մեր կոմերիտական նվերը պարտիայի համագումարին»։

Երիտասարդ ագիտատորին թվում էր, թե այդ մասին ինքը վաղուց մտածել է, ուզել է ասել իր ընկերներին, բայց կարծես բառերն իրենց տեղը չեն ընկել, մի ամբողջական նախադասություն չի կազմվել ու միայն այդ պատճառով չի ասվել։ Իսկ այս-

տեղ ինչքա՜ն լավ է ասված։ ՀամԼԿԵՄ Կենտկոմի Դիմումի մեջ, որն ուղղված է մեր երկրի բոլոր պատանիներին ու աղջիկներին, այնպես է ասված, ինչպես մտածում են իրենք այժմ՝ Երևանի ժամացույցի գործարանի մամլման ցեխի բոլոր աշխատողները։ Բայց կոմերիտական ագիտատորը գիտի, որ այդպես են մտածում մեր Միության բոլոր ծայրերում, և ոչ միայն մտածում են, այլև յուրաքանչյուրը ձգտում է այնպես անել, որ իր կատարած գործի մասին ևս մի տող գրվի համաժողովրդական զեկույցի մեջ։

Եվ ագիտատորը հասկանում է իր դերը, այդ ամենի մասին կրկին ու կրկին պատմում ընկերներին, նրանց մեջ բորբոքում սոցիալիստական մրցության կրակը։ Բայց նա սովորություն չունի առանց նախապես պատրաստվելու ունկնդիրներին հանդիպել ինչպես ասում են, հանպատրաստի մի բան ասել։ Նախօրոք նա թեմայի ընտրություն է կատարում, կշռադատում իր յուրաքանչյուր խոսքը և նոր միայն հանդես գալիս ունկընդիրների առջև։

Ագիտացիայի ժամը պարզ է՝ կամ ընդմիջմանը, կամ աշխատանքից հետո։ Նա կարծես ամեն անգամ զրույցի է բռնվում



նախ Ավետիքի հետ, ու այդ զրույցին սկսում են մասնակցել բոլորը։ Ցեխի աշխատողները հարազատ եղբոր պես սիրում են իրենց ագիտատորին՝ Ռազմիկ Պետրոսյանին։ Շատ քիչ է պատահում, որ նա հավաքի բանվորներին և սկսի նրանց համար թերթ կարդալ։ Սովորաբար նա իր կարդացածի մասին նախ պատմում է ունկնդիրներին, և ապա սկսվում է զրույցը, որը ծավալվելով՝ գրավում է բոլորին։

Ագիտատոր Ռազմիկն էլ նրանց նման աշխատող է։ Իմանալով այս կամ այն փաստի մասին, նա էլ է հուզվում, նա էլ է ուզում իր մտքերը բաժանել ընկերների հետ։ Այդպես է ստացվում, ու ընկերները չգիտեն, թե Ռազմիկը իր հա՞մար է անում այդ ամենը, թե՞ ընկերների։ Ասենք, այդ հարցերը ոչ մի անգամ չեն հետաքրքրել ո՛չ ագիտատորին, ո՛չ էլ բանվորներին, քանի որ նրանք բոլորն էլ մի նպատակ ունեն՝ որքան կարելի է ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք տալ երկրին, արտադրանք, որն ստեղծվում է հենց իրենց՝ ագիտատոր Ռազմիկ Պետրոսյանի, Ավետիք Կարապետյանի, Մելիք Մուրադյանի, Քնարիկ Աթանյանի, Ժենիկ Մինասյանի ձեռքերով, նրանց մտքի ուժով, ստեղծագործա-

կամ թռիչքներով։ Ովքե՞ր են այս հինգ ընկերները, որոնք օժտված են այսքան մեծ շնորհքով, և մի՞թե միայն այս հինգն են արժանի խրախուսանքի։ Իհարկե, ոչ։ Նախ՝ այս հինգի մասին։ Առաջինին, որ ագիտատորն է ու նրա առիթով գրվեց այս ամենը, կարելի է գործարանում հանդիպել ամեն ժամի, իսկ եթե իրեն անձամբ չգտնենք, կարող ենք նրա հետ ծանոթանալ.. գործարանի նորարարների պատվո-տախտակում։ Նրա նկարը փակցված է աջ կողմում, իսկ նրա արժեքավոր մի նորարարական առաջարկի մասին պատմվում է հենց նկարի կողքին։ Խոհուն հայացքով նա քեզ է նայում, ու եթե ծանոթ ես նրա գործերին, քեզ թվում է, թե նա հենց հիմա կրկնում է իրեն այնքան հարազատ դարձած խոսքերը. «...աշխատիր այնպես, որ համագումարին ուղղված համաժողովրդական զեկույցի մեջ քո գործերի մասին էլ մի տող գրվի»։

Եվ այս խոսքերն իրականություն դարձնելու համար շատ ու շատ բան է արել նա...

Գործարանում քննարկում էին ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Ելույթ



ունեցավ ագիտատոր Ռազմիկն ու առաջարկեց.

— Նորարարական առաջարկությունների զարկ տալու նպատակով անհրաժեշտ եմ համարում մեր ցեխում ստեղծել կոմունիստական աշխատանքի համար պայքարող նորարարների երեք բրիգադա։

Բոլորը ծափահարեցին... Բայց մի՞թե նրա ընկերները նոր էին լսում այդ առաջարկը։ Իհարկե, ոչ։ Այդ մասին Ռազմիկը նախօրոք խոսել էր ցեխում, ընկերների հետ և այդ օրն ուզում էին իրականացնել իրենց մտադրությունը։ Գործարանի ղեկավարությունն ընդառաջեց. մամլման ցեխում ստեղծվեց կոմունիստական աշխատանքի համար պայքարող երիտասարդական երեք բրիգադա։ Երկրորդ բրիգադայի ղեկավար նշանակվեց հենց ինքը՝ Ռազմիկը։ Ու իսկական սոցիալիստական մրցություն սկսեց ծավալվել բրիգադաների միջև։

— Երրորդ բրիգադան այժմ առաջ է անցել,— առանց սրտի ցավի պատմում է ագիտատորը՝ երկրորդ բրիգադայի բրիգադիրը։ Զգում ես, որ նա ոչ միայն իր բրիգադայի հաջողություններով է ուրախանում, այլև հավասարապես մտածում է մյուս բրիգադաների մասին։

— Իսկ ինչն է ձեզ խանգարել առաջնությունը պահելու համար,— հարցնում ենք ագիտատորին:

— Էդիկը քննություն է հանձնում, իսկ նա մեր բրիգադայի «ինժեներն» է: Դե, գիտե՞ք, նա սովորում է պոլիտեխնիկական ինստիտուտի չորրորդ կուրսում: Մենք շատ բան ենք մտածում, բայց միայնակ իրագործել դժվարանում ենք: Գծագրերը նա է կազմում, հաշվումներ կատարում: Տարեսկզբից մինչև հիմա մեր բրիգադան 13 նորարարական առաջարկություն է արել, որից 5-ն արդեն ներդրվել է արտադրության մեջ և գործարանին տարեկան տալիս է 3400 ռուբլու օգուտ: Բայց գիտե՞ք ինչ պարտավորություն ենք ստանձնել. ցեխի նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունների կեսից ավելին մեր բրիգադան է անելու, իսկ դա բավական բարձր պարտավորություն է:

— Այդ մասին գիտե՞ն բրիգադայի, ցեխի բանվորները,—հարցնում ենք Պետրոսյանին:

— Ինձանից լավ,—կատակում է նա:

Եվ իրոք, երբ ցեխում ագիտատոր է հենց ինքը՝ սոցիալիստական մրցության առաջավորը, նորարարը, Կոմունիստական աշխա-



տանքի բրիգադայի բարձր կոչման համար պայքարող կոլեկտիվի ղեկավարը, այլևս վատ աշխատանքի մասին խոսք լինել չի կարող: Ահա թե ինչու է ցեխն իր պլանները սիստեմատիկաբար գերակատարում, ահա թե ինչու, երբ ծանոթանում ես կոմերիտական մյուս ագիտատորների աշխատանքին. հիշում ես ՀամԼԿԵՄ Կենտկոմի Դիմումի մեջ ասված խոսքերը.

«Կոմերիտական կազմակերպությունների պարտքն է յուրաքանչյուրին օգնել որոշելու իր կոնկրետ պարտավորությունները Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ, համագումարը նշանավորելու աշխատանքային նոր նվերներով, կոմունիստաբար»:

Եվ ագիտատորը գիտի գործով ցույց տալ իր օգնությունը ընկերներին:

«Լենինյան կոմերիտմիության անդամները,— ասված է ՀամԼԿԵՄ Կենտկոմի Դիմումի մեջ,— կոչված են երիտասարդությանը միշտ ցույց տալու անձնվեր աշխատանքի. բարձր գիտակցականության և ակտիվության օրինակներ»: Երբ ագիտատոր Ռազմիկ Պետրոսյանը կարդաց այս տողերը, գոհունակու-

թյան մի ժպիտ անցավ նրա դեմքով։ Պարտքը կատարած մարդու գիտակցությամբ նա մտաբերեց, թե ինչպես իր սեփական նախաձեռնությամբ հանձն առավ 44 բանվորների սովորեցնել ժամագործի մասնագիտություն։ Իսկ երբ լսում ես նրա ելույթները, նորարարների ու ռացիոնալիզատորների հավաքներում, կոմերիտմիության կոմիտեի նիստերում, զգում ես, որ նա կատարում է Համ. ԼԿԵՄ Կենտկոմի պահանջը՝ ակտիվորեն օգնում է իր ընկերներին, սովորեցնում է նրանց՝ դառնալու կոմունիզմի կառուցման ակտիվ մարտիկներ։

Իսկ ովքե՞ր են մյուսները, որոնց մասին չխոսվեց այս հոդվածում։ Դրանք կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարող մյուս բրիգադաների անդամներն են, որոնք այսօր առաջ են անցել Պետրոսյանի ղեկավարած բրիգադայից, այն մարդիկ, որոնք գործարանի ամբողջ կոլեկտիվի հետ պայքարում են տարեկան պլանը կատարելու դեկտեմբերի 30-ին, տալու նյութերի, էլեկտրաէներգիայի խնայողություն։ Այդ ամենի մեջ իր բաժինն ունի կոմերիտական ագիտատորը՝ Ռազմիկ Պետրոսյանը։

ԼՈՐԻՍ ԿՐՈՅԱՆ



# ԱՌԱՋԻՆ ԲՆԱԳԾՈՒՄ ՔԱՅԼՈՂԸ

Նոր է լրացել Հոկտեմբերյանի շրջանի Նոր Ամասիա գյուղի կոլտնտեսուհի Սաթենիկ Մալայանի քսան տարին, բայց նա արդեն դարձել է բարձր բերքի առաջամարտիկ, նրա մասին հարգանքով ու հպարտությամբ են խոսում բոլորը։

Մի քանի տարի առաջ կոլտնտեսությունում շատերը թերահավատորեն էին վերաբերվում եգիպտացորենի մշակությանը և գտնում էին, որ իրենց մոտ այդ կուլտուրան արդյունք չի տա։

Բայց եղան մարդիկ, որոնք ուսումնասիրեցին այդ արժեքավոր կուլտուրայի ագրոտեխնիկան և ապացուցեցին, որ եգիպտացորենն իրենց մոտ լավ կաճի և կտա առատ բերք։

Դրա առաջին նախաձեռնողները եղան գյուղի կոմերիտականները։ Նրանք կազմակերպեցին եգիպտացորեն մշակող կոմերիտական-երիտասարդական օղակ։ Այդ օղակի ղեկավարությունն ստանձնեց կոմերի-

տուհի Սաթենիկ Մալայանը։ Յոթ տղաների ու աղջիկների խրախուսելի նախաձեռնությունը ջերմ հավանության արժանացավ գյուղի պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության կողմից։

— Դե՛, հիմա ձեզ տեսնենք,— դիմելով օղակավարուհուն,— ասաց կոլտնտեսության նախագահը։

Օղակի անդամները գործի անցան և հաստատ որոշում ընդունեցին հեկտարից ստանալ ոչ պակաս 1.300 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա։

... Եգիպտացորենը դաշտերի թագուհին է, եգիպտացորենը կաթ է, միս է... ընկեր Ն. Ս. Խրուշչովի այս խոսքերը քաջալերել էր Ս. Մալայանի օղակի անդամներին։ Ամեն առավոտ վաղորդյան մշուշի հետ օղակավարուհին, մյուս աղջիկներն ու տղաները դաշտ էին գնում, ջանասիրությամբ մշակում էին եգիպտացորենի դաշտերը։ Լավ խնամքի շնորհիվ եգիպտացորենը աճում, բոյ էր քաշում, իսկ դա ուրախացնում էր օղակի անդամներին։

Եվ երբ եկավ ոսկի աշունը, ամփոփվեցին երիտասարդ եգիպտացորենագործների աշխատանքի արդյունքները, բոլորը զարմացան։



Սաթենիկի օղակը պլանով նախատեսված 700 ցենտների դիմաց հեկտարից հավաքել է 1.300 ցենտներ կանաչ զանգված, իսկ 39 ցենտների փոխարեն՝ 51 ցենտներ հատիկ։

Այս ուրախալի լուրը անմիջապես տարածվեց գյուղում, Հոկտեմբերյանում, և ռեսպուբլիկայում։

Եվ հիրավի։ Սաթենիկն ստացավ ռեկորդային բերք, առաջ անցավ ռեսպուբլիկայի առաջավոր եգիպտացորենագործներից։ Սաթենիկ Մալայանի անունը տարածվեց մեր անծայրածիր երկրով մեկ։ Նրա մասին գովասանքով ու ակնածանքով խոսում են շատ-շատերը։

ՀԿՊ Կենտկոմի VIII պլենումում ընկ. Յա. Զարոբյանը, խոսելով կոլտնտեսային արտադրության առաջավորների մասին, մատնացույց արեց նաև այդ էնտուզիաստ աղջկա անձնվեր աշխատանքը։ «Սաթենիկ Մալայանը,— ասաց ընկ. Զարոբյանը,— եգիպտացորենի բարձր բերք ստանալու ասպարեզում իսկական փարոս է Արարատյան դաշտավայրի կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների համար»։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-

ամյակին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած իր ճառում ընկեր. Ն. Ս. Խրուշչովը, շատերի հետ միասին, գովասանքի արժանացրեց նաև Սաթենիկ Մալայանին։

Այո՛։ Ս. Մալայանի աշխատանքային գործունեությունը, նրա ստեղծագործական խիզախումները մեծ հիացմունք են առաջ բերում կոլտնտեսականների մեջ։

## ԻՆՉՊԵՍ ԱՊԱՀՈՎՎԵՑ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՍՏԱՑՈՒՄԸ

Մենք եղանք եգիպտացորենի բարձր բերքի վարպետ, հիանալի փարոս Սաթենիկ Մալայանի մոտ։ Հենց եգիպտացորենի դաշտում նա պատմեց իր աշխատանքի փորձի մասին։

— Հայտնի է, որ եգիպտացորենը խոնավություն և ջերմություն սիրող կուլտուրա է։ Այդ նպատակով մենք ցանքի համար ընտրում ենք հումուսով հարուստ, թեթև մեխանիկական կազմ ունեցող և շուտ տաքացող հողեր։ Որպեսզի անհրաժեշտ խոնավություն կուտակվի հողում, ուշ աշնանը եգիպտացորենին հատկացված տարածությունում կատարվում է ցրտահերկ։ Գարունը բացվելուն պես, ցանքից 15—20 օր առաջ մենք ձեռնամուխ ենք լինում հողի նախացանքային մշա-



կությանը. 8—10 սմ խորությամբ փխրեցնում ենք հողը, պարարտացնում հանքային պարարտանյութերով, հեկտարին տալով 1,5—2 ցենտներ սուպերֆոսֆատ։

Հողը նախապատրաստելուց հետո, երբ այնտեղ արդեն կա 8—10 աստիճան ջերմություն, կատարում ենք քառակուսի-բնային եղանակով ցանք։ Այնուհետև 3—4 օր հետո ցանքերին տալիս ենք առաջին ջուրը։ Երբ դաշտը պատվում է եգիպտացորենի համերաշխ ծիլերով, և բույսերն արդեն ունենում են 3—4 տերև, սկսում ենք մշակությունը։ Նախ կատարում ենք երկկողմանի կուլտիվացիա՝ 8—10 սմ խորությամբ, ապա 10—15 օր հետո քաղհանում և փխրեցնում ենք բոլոր տարածությունները։ Երկրորդ քաղհան-փխրեցումից առաջ կատարում ենք նոսրացում, բներում թողնելով 2 բույս, միմյանցից 5 սմ հեռավորությամբ։ Բույսերի արմատներն ուժեղանալու ժամանակ տալիս ենք լրացուցիչ սնուցում՝ յուրաքանչյուր հեկտարին 350 կգ ամոնիակային սելիտրա։ Ագրոտեխնիկական միջոցառումներն անխախտ կիրառելու շնորհիվ ցանքերը միշտ գտնվում են փուխր վիճակում, զերծ են լինում մոլախոտերից։ Այս բոլորը մեզ հնարավորություն են տալիս աճեցնել բարձր

բերք, դրանով իսկ ավելացնել կաթի, մսի արտադրությունը։

— Բայց մենք չենք հանգստանում ձեռք բերածով,— շարունակում է Սաթենիկ Մալայանը։— Ընկ. Ն. Ս. Խրուշչովի խոսքերը ոգեշնչել են մեր օղակի եգիպտացորենագործներին։ Վերջերս նրանք հավաքվեցին և խորհուրդ արին.

— Անցած տարի լավ մշակեցինք եգիպտացորենի դաշտերը և առատ բերք հավաքեցինք։ Հոկտեմբերի 17-ին հրավիրվում է Կոմունիստական պարտիայի հերթական XXII համագումարը։ Եկեք աշխատենք կոմունիստաբար, մրցություն ծավալենք ընթացիկ տարում հեկտարից 1.400 ցենտներ բերք ստանալու համար։

Սաթենիկ Մալայանի օղակի անդամների նոր նախաձեռնությունը ջերմորեն պաշտպանեցին նաև Օհաննա Ներսիսյանի ղեկավարած օղակի եգիպտացորենագործները։

Ահա Մյասնիկյանի անվան կոլտնտեսությունում այսպես ծնունդ առավ այս նոր նախաձեռնությունը, որը կոլտնտեսականներն անվանում են «1400 ցենտներականների շարժում»։ Դա նոր բնագիծ է։

Թե Սաթենիկ Մալայանի և թե Օհաննա Ներսիսյանի օղակների եգիպտացորենա-



գործները լի են հեկտարից 1400 ցենտներ կանաչ զանգված ստանալու վճռականությամբ։ Այս օրերին աշխատանքային բարձր խանդավառություն է տիրում կոլտնտեսությունում։ Կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները քաղհանում և փխրեցնում են եգիպտացորենի դաշտերը, որոնց շնորհիվ աճում ու փարթամանում են բույսերը։

Սաթենիկը և նրա օղակը քայլում են առաջին բնագծում։

Սաթենիկ Մալայանը ոչ միայն եգիպտացորենի բարձր բերք է աճեցնում, այլև բամբակի։ Նրա օղակը 14,5 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից 1960 թվականին հավաքեց 32 ցենտներ բամբակ։ Այս տարի Սաթենիկը որոշել է միջին բերքատվությունը հասցնել 37 ցենտների։

Անվանի օղակավարուհին շատ հետևորդներ ունի։ Նրա օրինակով են աշխատում կոլտնտեսության մյուս եգիպտացորենագործները։ Ամեն օր փարոսի հասցեով ստացվում են բազմաթիվ սրտառուչ նամակներ։ Գրում են Սովետական Միության տարբեր շրջաններից։ Գյուղատնտեսության աշխատողները բարեկամական կապեր են հաստատում փարոսի հետ, շնորհավորում նրան՝ բարձր բերք

աճեցնելու, ընկ. Ն. Ս. Խրուշչովի խրախուսանքին արժանանալու համար։

Կրասնոդարի երկրամասի Լենինի անվան գյուղատնտեսական արտելի կոմերիտական-երիտասարդական օղակի օղակավարուհի Ն. Կիսիլևան իր նամակում գրում է.

«Սիրելի քո՛ւյր, մեր օղակի եգիպտացորենագործները հիացել են Ձեր աշխատանքային սխրագործություններով։ Հետևելով Ձեր օրինակին, մենք որոշեցինք ընթացիկ տարում հեկտարից ստանալ 1.200 ցենտներ կանաչ զանգված և 35 ցենտներ հատիկ»։

***

Եվ Սաթենիկ Մալյանը նորից եռուզեռի մեջ է, աշխատում է բազմապատկված եռանդով, որպեսզի աշնանը ամոթով չմնա, պարտիայի հերթական համագումարը նշանավորի հեկտարից 1.400 ցենտներ եգիպտացորենի կանաչ զանգված ստացած։

Թողնելով գյուղը, չես կարող չհիանալ Սաթենիկ Մալյանով, կոլտնտեսային դաշտերի այդ խանդավառ փարոսով։ Որքա՞ն խինդ ու կորով կա, որքա՞ն ավյուն միշտ առաջին ընագծում քայլող այդ աղջկա սրտում։

ՀՐ. ՀՈՎՍԵՓՅԱՆ



## ՋՐՈՒՅՑ ԱՐՈՏԱՎԱՅՐԵՐԸ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Արդյունավետ օգտագործել արոտավայրերը, նշանակում է անասուններին արածացնել հերթափոխային կամ զագոնային սիստեմով, որը ազատ և անսիստեմ արածացման նկատմամբ ունի մեծ առավելություններ և խիստ բարձրացնում է անասունների կաթնատվությունը։ Սակայն մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում և սովխոզներում զագոնային արածացման վրա պատշաճ ուշադրություն չեն դարձնում, ավելի ճիշտ՝ թերագնահատում են այն, կարծելով, որ զագոնային արածացումը շատ արդյունավետ չէ։ Ընդհակառակն, հերթափոխային արածացումը շատ արդյունավետ է, և այն պետք է լայնորեն կիրառել։ Նրա էությունն այն է, որ արոտավայրը բաժանվում է որոշակի մասերի և արածացվում մաս առ մաս։ Ամեն մի մասը

արածացվում է 20—25 օրը մեկ անգամ, որպեսզի արոտային բույսը նորից վերականգնի իրեն և կուտակի նոր մասսա, ինչպես ասում են վերաճ տա։

Հերթափոխային կամ զագոնային արածացման սիստեմում պետք է օգտվել նաև արածացման մի նոր մեթոդով, որը կոչվում է արածացում՝ ըստ բաժինների։ Նրա կիրառման ժամանակ ամեն օր զագոնում անջատվում է մի նոր կտոր արոտ՝ ըստ անասունների մեկ օրվա պահանջի։ Ամբողջ օրը անասուններն արածում են միայն այդ կտորում, արոտային խոտաբույսերը արածացման այս մեթոդի կիրառման ժամանակ մեկ անգամ են կտրվում (արածացվում) և մեկ անգամ տրորվում։

Այդպիսի արածացումը թույլ է տալիս խոնավ պայմաններում 20—25 օրվա ընթացքում ստանալ վերաճ և նորից արածացնել։ Եթե տվյալ արոտը խոնավությամբ ապահովված է (տարեկան տեղումները 500—800 մմ) հնարավոր է լինում միևնույն զագոնը անասուններին վերադարձնել 3—4 անգամ։ Նման ռեժիմի կարգավորման դեպքում մինչև 6 անգամ արածացումը վնաս չի բերում։ Արածացումը պետք է



սկսել այն զագոնից, որտեղ խոտը ավելի շուտ է բարձրացել։

Հետագա արածացման ցիկլերը պետք է սկսել, երբ խոտի բարձրությունը կհասնի 10—25 սմ։ Պետք է աշխատել, որ մինչև արածացումը բույսերը չանցնեն հասկակալման շրջանը, որովհետև կովերը հասկ տված բույս չեն ուտում։ Արածացումը պետք է կատարել 4—5 սմ բարձրության վրա։ Զագոնային արածացումը խիստ կերպով տարբերվում է ազատ արածացումից։ Հերթափոխային արածացումը հենց առաջին տարում նպաստում է անասունների մթերատվության բարձրացմանը։ Կթու կովերի կաթնատվությունը բարձրանում է 25—50 տոկոսով, երբեմն էլ կրկնակի անգամ։ 100 կովի համար զագոնը պետք է լինի 3—5 հեկտար։

Ամառային բարձրալեռնային արոտավայրերը կարելի է բաժանել 6—8 զագոնի և յուրաքանչյուր զագոնում արածացնել 4—6 օր։ Ոչխարները առավոտից պետք է արածեն հին հետքով և գիշերը մակաղատեղ վերադառնան թարմ խոտ արածելով։

Հարկավոր է նշել, որ զագոնային արածացումը նպաստում է արոտավայրի օգտա-

գործման երկարատևությանը, և ստեղծվում է տիպիկ արոտային բուսականություն։ Ճիշտ զագոնային սիստեմի անցկացումը պահանջում է զագոնների իրարից անջատում ցանկապատով։ Ցանկապատը կարող է լինել քարից, փայտից և լարից, օգտագործվում է նաև էլեկտրական ցանկապատ, որը քիչ ծախս է պահանջում և տալիս է լավ արդյունք։

Զագոնային արածացման ներդրումը պետք է լինի կոլտնտեսության կամ սովխոզի զոոտեխնիկի հիմնական աշխատանքներից մեկը։ Զագոնային արածացումը թույլ է տալիս ամառվա ընթացքում որոշ զագոններից կուտակել խոտ։

Ներկայումս վատ վիճակում են գտնվում ձմեռային արոտները, այն արոտները, որոնք միշտ եղել են ոչխարների ձմռան կերի հիմքը։ Այդ արոտները նախկինում ավելի լավ էին օգտագործվում։ Կոլտնտեսությունները արգելման (զորուղի) միջոցով կարողանում էին գարնանից մինչև աշնան ամիսները ձմեռային արոտները պահպանել արանց արածացման։ Այժմ այդ կարգը խախտվել է։ Կոլտնտեսություններից շատերը կովերի նախիրը սար չեն բարձրացնում,



այն պահում են գյուղմերձ արոտներում, իսկ այդ արոտներում խոտի բերքը ցածր է լինում, որի պատճառով կոլտնտեսություններն ստիպված ժամանակից շուտ արածացնում են նաև ձմեռային արոտները։ Դրանով խախտվում է ձմեռային արոտների բուսականության զարգացման ռեժիմը, բուսականությունը ոտնատակ է արվում, և այդպիսի արոտները շարքից դուրս են գալիս։ Պետք է վերջ տալ ձմեռային (սեզոնային) արոտի օգտագործմանը ամառվա ընթացքում։ Եթե բարձր մթերատու կովերը սար չեն բարձրացվում, ապա նրանց համար պետք է կազմակերպել կանաչ կոնվեյեր, իսկ ձմեռային արոտները հատկացնել միայն ու միայն ոչխարներին։

Գրեթե բոլոր շրջաններում, բացի իսկական արոտներից, գարնանը և աշնանը որպես արոտավայր օգտագործվում են նաև խոտհարքները։ Արածացումը, մանավանդ գարնանը, խիստ կերպով իջեցնում է խոտհարքի բերքը։ Այդ մեծ չարիք է, որից պետք է խուսափել։ Մինչև այժմ որպես միջոցառում խորհուրդ է տրվել վերջ տալ խոտհարքներում անասունների արածացմանը, բայց կերի պակասի պատճառով այն չի

կիրառվել, ուրեմն պետք է փնտրել այլ միջոց։ Այդ միջոցը խոտհնձից հետո խոտհարքի պարարտացումն է։ Մեկ հեկտարին պետք է տալ 3 ցենտներ սուպերֆոսֆատ, 1,5 ցենտներ սելիտրա և 1 ցենտներ կալիումական աղ։ Պարարտացման շնորհիվ խոտհարքի բերքը այնքան է ավելանում, որ հնարավոր է լինում նույն խոտհարքում գարնանն արածացնել և ամռանն ստանալ խոտի բերք։ Այն կոլտնտեսությունները և սովխոզները, որոնք գարնան սեզոնին արոտի խիստ պակաս ունեն, պետք է կիրառեն խոտհարքների աշնանային պարարտացում և անասուններին արածացնեն միևնույն տարածության վրա ու խոտ հավաքեն։

Այդ բոլորից բացի, պետք է սիստեմատիկաբար արոտավայրերը պարարտացնել օրգանական և հանքային պարարտանյութերով։ Փորձերով ապացուցված է, որ 2—3 տարվա ընթացքում ամենաաղքատ բուսական ծածկ ունեցող արոտավայրի բերքը կարելի է բարձրացնել 3—5 և մինչև 10 անգամ։ Արոտների պարարտացման համար պետք է օգտագործել գոմաղբ, գոմաղբահյութ (ժիժան), կոմպոստ, նմանապես և



հանքային պարարտանյութեր՝ սելիտրա, սուպերֆոսֆատ և կալիումական աղ։

Մեկ հեկտարից 50 տոննա կանաչ մասսա ստանալու համար ամեն տարի մարգագետինը պետք է պարարտացնել 10—12 տոննա գոմաղբով կամ կոմպոստով, 3 ցենտներ սուպերֆոսֆատով, 1,5 ցենտներ կալիումական աղով և 1 ցենտներ ամոնիակային սելիտրայով։ Անհրաժեշտ է սելիտրան հողի մեջ մտցնել մաս-մաս, ամեն մի զագոնն արածացնելուց անմիջապես հետո։ Ամառվա ընթացքում սնուցում պետք է տալ այնքան անգամ, որքան անգամ բույսը կտրվում է (արածացվում)։

Ամառային արոտները պետք է ունենան այնպիսի բուսական ծածկոց, որը կապահովի արածող անասունների սպիտակուցի պահանջը։ Դրա համար բավական է խոտածածկում ունենալ 20—30 տոկոս երեքնուկ, իսկ այն հեշտությամբ կարելի է ունենալ, եթե արոտավայրը պարարտացվում է ֆոսֆորական և կալիումական պարարտանյութերով։

Պարարտացմանը զուգընթաց հարկավոր է ոչնչացնել արոտներում եղած գուղձերը, հավաքել քարերը, պայքարել մոլախոտերի

դեմ՝ քաղհանի կամ վաղ հնձման ու պարարտացման միջոցով։ Քարերից ազատված և այլ պատճառներից առաջացած լերկ տեղերում հարկավոր է կատարել ենթացանք։ Եթե լերկ տեղերը փոքր են և շրջապատված են խիտ խոտակազմով, ենթացանքի կարիք չկա, շրջապատի բույսերի արմատները թափանցում են լերկ տեղերը և վերջինները արագորեն ծածկվում են բուսականությամբ։ Խիստ կարևոր է նաև արոտներից թփուտների մաքրումը, որը պետք է կատարել զգուշությամբ և շերտերում մեջընդմեջ, որպեսզի հողի լվացում չառաջանա։ Հարթ տեղերում թփուտները կարելի է լրիվ արմատախիլ անել։

Այս միջոցառումների մեջ է մտնում նաև արոտավայրերի հանգիստը 1—2, կամ եթե արոտը շատ է ոտնահարվել ու նրա հողը լվացվել՝ 3—5 տարով։ Բուսական ծածկոցի վերականգնումը արագացնելու նպատակով հանգստի ժամանակ պետք է կատարել արոտի վերանորոգում, այսինքն անասունների արածացումը արգելել և դրանով իսկ նպաստել խոտաբույսերի սերմավորմանը, ապա արոտավայրը պարարտացնել և կարիքի դեպքում կատարել ենթացանք։

Մեծ նշանակություն ունի արոտներում



անասունների մակաղատեղերի փոփոխումը, որը մոտ 50 տոկոսով բարձացնում է արոտի բերքը։ Այս միջոցառումը պետք է կատարել, ելնելով հետևյալ նորմայից՝ մեկ ոչխարը մեկ քառակուսի մետրի վրա, 10 ժամվա ընթացքում։ Մակաղատեղերի փոփոխումը խոշոր նշանակություն ունի նաև ամառային արոտներում սիլոսանյութ ստանալու գործում։ Այնտեղ առաջանում են մեծ քանակությամբ սիլոսային բույսեր, որոնց ամառվա սկզբին սիլոսացնում են։ Աշնանը, երբ արոտի խոտը չորանում է, արածացման հետ անասուններին կերակրում են նաև հյութալի կերով, այսինքն՝ արոտում պատրաստած սիլոսով և դրանով իսկ իրականացնում սարում պահվածքի ամառային շրջանը ու խնայում ձմեռվա համար կուտակած խոտի պաշարը։ Այս միջոցառումը շատ կարևոր է հատկապես այն տարիներին, երբ խոտի բերքը պակաս է լինում։

Ձմեռանոցները հնարավորություն են տալիս օգտագործել սարերում եղած խոտհարքները, այն տարածությունները, որոնք ճանապարհ չլինելու պատճառով չեն հնձվում։

Ձմեռանոցը թույլ է տալիս խոտը քաղել և օգտագործել տեղում։

ՊՐՈՖ. Շ. ԱՂԱԲԱԲՅԱՆ

# ԼԵՀԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՎԵՐԱԾՆՆԴԻ ՏՈՆԸ

Հուլիսի 22-ին եղբայրական լեհ ժողովուրդը, Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրների աշխատավորների հետ միասին, մեծ սիրով տոնելու է իր ազգային վերածննդի օրը։ Տասնյոթ տարի առաջ՝ 1944 թվականի հուլիսի 22-ին, Խելմ քաղաքում հրապարակվեց ազգային ազատագրության Լեհական Կոմիտեի մանիֆեստը՝ Լեհաստանի նոր ժողովրդական իշխանության պատմական փաստաթուղթը։ Մանիֆեստը լեհ ժողովրդին կոչ արեց՝ տապալել շահագործող դասակարգերի տիրապետությունը, ստեղծել ժողովրդական իշխանություն, Լեհաստանն ազատագրել օտարերկրյա իմպերիալիստների ճնշումից։ Սովետական և Լեհական բանվորների միացյալ զինված ուժերով երկիրն ազատագրվեց ֆաշիստական զավթիչներից, ստեղծվեց ազատ, անկախ, դեմոկրատական Լեհական պետություն։ Արևմուտքում լեհական պատ-



մական հողերը միավորվեցին մեկ միասնական լեհական պետության մեջ, նրա սահմաններն ամրապնդվեցին Օդերի, Նեյսեյի վրա և Բալթիկ ծովի շրջակայքում։ Անցած 17 տարիների ընթացքում Լեհաստանի աշխատավորները, լեհական բանվորական պարտիայի ղեկավարությամբ, հաղթահարելով հետպատերազմյան տարիների դժվարությունները, վճռական հաղթանակներ տարան սոցիալիստական շինարարության բնագավառում։

Տնտեսապես հետամնաց, ագրարային երկրից Լեհաստանը, հենվելով ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների եղբայրական բարեկամության և համագործակցության վրա, վերածվեց բարձր զարգացած ինդուստրիալ ագրարային երկրի։

Ժողովրդական իշխանության տարիներին Սովետական Միության անշահախնդիր օգնությամբ կառուցված Նովայա Գուտայի Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը իր հզորությամբ այժմ գերազանցում է նախապատերազմյան Լեհաստանի մետալուրգիական ամբողջ արդյունաբերությանը։ Այդ «Լեհական դարբնոցը» տարեկան արտադրում է մեկ ու կես միլիոն տոննա պողպատ, իսկ հնգամյակի վերջում նա ավելի

քան կկրկնապատկի պողպատի արտադրությունը։ 1965 թվականին երկրի արդյունաբերական արտադրանքը կգերազանցի նախապատերազմյան մակարդակը 10 անգամ։ Նախատեսվում է աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ բարձրացնել մոտավորապես 40 տոկոսով, իսկ բանվորների ռեալ աշխատավարձը՝ 22 տոկոսով։

Հնգամյակի խոշորագույն կառույցներից են հանդիսանում «Տուրով»-ի լեռնա-էներգետիկական կոմբինատը Տարնոբժեգում և այլն։

Հինավուրց Վարշավայի մոտ, Վիսլայի աջ ափին, փռված են Ժերանի շրջանի արդյունաբերական կորպուսները՝ ավտոգործարանը, ջերմաէլեկտրակայանը, նոր կառուցվող խոշոր գետային նավահանգիստը։

Վերածնվել է նաև Լեհաստանի մայրաքաղաքի՝ ռեվոլյուցիոն տրադիցիաներով նշանավոր Վոլյայի շրջանը, որտեղ կյանքի են կոչվել տասնյակ ռադիոապարատուրային և էլեկտրասարքավորումների գործարաններ։ Ժոլիբոժայում ծնվեց գնդասառանցքակալային գործարանը, իսկ Տարգովկում՝ հեռուստացույցային ապարատների գործարանը։ Աշխարհով մեկ հայտնի է Գդանսկի նավա-



շինարանի, Վարշավայի ռադիոտեխնիկական, Վրոցլավի էլեկտրատեխնիկական գործարանների և այլ ձեռնարկությունների արտադրանքը։ Լեհաստանի արդյունաբերության բուռն զարգացումն անհրաժեշտ նախապայմաններ ստեղծեց գյուղատնտեսության անշեղ վերելքի համար, որի արտադրանքը 1965 թվականին կավելանա մոտ 22 տոկոսով։ Լեհական Միացյալ բանվորական պարտիան և Լեհաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում երկրի գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ՝ ամեն կերպ զինելով այն նորագույն տեխնիկայով։ Պայքարելով գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխության համար, Լեհական Միացյալ բանվորական պարտիան առաջնորդվում է լենինյան կոոպերատիվ պլանով, ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության համաշխարհային պատմական փորձով։ Գյուղատնտեսության զարգացման ասպարեզի մեծ հաջողությունների մասին խոսվեց այս տարվա մարտին սոցիալիստական մրցության մասնակիցների Համալեհական խորհրդակցությունում, որին մասնակցում էին երկուսուկես հազար պատգամավորներ, որոնք ներկայացնում

էին 20 հազար մրցող արտադրական և 9 հազարից ավելի սոցիալիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարող բրիգադներ: Միայն այս հնգամյակի տարիներին լեհական գյուղում կկառուցվի 1,2 միլիոն բնակելի տուն: Արագ տեմպով է զարգանում ժողովրդական Լեհաստանի կուլտուրան: Տաղանդավոր լեհ ժողովուրդը մեծ ավանդ է մուծել համաշխարհային կուլտուրայի գանձարանը: Մեծագույն գիտնական Նիկոլայ Կոպերնիկոսի, հանճարեղ պոետ Միցկևիչի, աշխարհահռչակ կոմպոզիտոր Ֆրեդերիկ Շոպենի և մյուսների անունները լայնորեն հայտնի են ողջ աշխարհին:

Սովետական ժողովուրդը և ողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը մեծ հարգանքով և պատվով են հիշում լեհ ժողովրդի ականավոր ռևոլյուցիոներ՝ Ձերժինսկու, Մարխլևսկու և մյուսների պայծառ անունները: Ժողովրդական տարիների ընթացքում Լեհաստանում կառուցվել են բազմաթիվ սանատորիաներ, հանգստյան տներ, մանկապարտեզներ, հազարավոր դպրոցներ, տասնյակ բուհեր և կուլտուրայի այլ օջախներ: Ժողովրդական Լեհաստանում ներկայումս 6 անգամ ավելի ինժեներներ և 5 անգամ ավելի տեխնիկներ կան, քան եղել է



կապիտալիզմի օրոք:

ԼՄԲՊ ԿԿ-ի 7-րդ պլենումը որոշում ընդունեց երկրում դպրոցական կրթության սիստեմի վերակառուցման մասին, որի գլխավոր նպատակն է ամրապնդել դպրոցի կապը կյանքի հետ: 1960—66 թ.թ. Լեհաստանում կկառուցվի 1000 դպրոց:

Լեհական չքնաղ մայրաքաղաքը ունի 15 թատրոն 55 կինոթատրոն, 10 կուլտուրայի տուն, 16 բարձրագույն ուսումնական հաստատություն, բազմաթիվ գրադարաններ, թանգարաններ և այլ կուլտլուս հիմնարկներ:

Վարշավայի հսկայական հրապարակներից մեկում երկու մագիստրալների խաչմերուկում վեր է խոյանում կուլտուրայի և գիտության հոյակապ պալատը՝ սովետական ժողովրդի նվերը:

Եղբայրական Ժողովրդական Լեհաստանը, հաջողությամբ կատարելով 1956—60 թվականների հնգամյա պլանը, մտել է իր զարգացման նոր, կարևոր էտապը՝ սոցիալիզմի կառուցման ավարտման ժամանակաշրջանը: Ժողովրդական Լեհաստանը ակտիվորեն պայքարում է խաղաղության համար: Նա սոցիալիզմի մյուս երկրների հետ միասին ընթանում է դեպի մարդկության լավագույն ապագան՝ կոմունիզմը:

ՎԱՆ. ՂԱԶԱՆՋՅԱՆ

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

★ **«Ցելինա» ավտոմեքենա.**— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հաջողությունների ցուցահանդեսում ցուցադրվում է նոր ունիվերսալ ավտոմեքենա, որն ստեղծվել է խոպանում աշխատելու համար։

Այդ նոր ավտոմեքենայով կարելի է փոխադրել մինչև 300 կգ. բեռ՝ կաթ, անասնակեր, քիմիական պարարտանյութեր, իսկ անհրաժեշտության դեպքում այն հարմարեցնել դաշտային բրիգադայի աշխատողներին փոխադրելու նպատակին։

«Ցելինան» ունի շահագործման բարձր ցուցանիշներ։ Նա հաջողությամբ հաղթահարում է խոչընդոտները։ 100 կիլոմետր տարածությունն անցնելու համար պահանջվում է միայն 8—10 լիտր բենզին։ Քաշը 700 կիլոգրամ է, երկու անգամ պակաս, քան «ԳԱԶ—69»-ը և ժամում կարող է անցնել 65 կիլոմետր։

★ **Նորը գետային նավատորմում.**— Այս տարվա գարնանից Վոլգայի կապույտ մագիստրալում սկսեց երթևեկել ջերմանավ-հսկան՝ 5 հազար տոննա բեռնվածությամբ։ Շուտով Վոլգայի ջրերում կերևան ևս 4 այդպիսի ջերմանավեր։

Վոլգայի գեղատեսիլ տարածությունը շուտով դուրս կգա նաև մարդատար թևավոր ջերմանավ— «Սպուտնիկը», որը փոխադրելու է 300 ուղևորներ։



★ Տորֆի արդյունաբերության Համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտն ստեղծել է ինքնատիպ կոմբայն, որը փոխարինում է տորֆագործային 16 մեքենաների և մեխանիզմների։ Նա պոկում և հողաշերտերից մաքրում է տորֆը, այն բարձում տրանսպորտին ու հեշտությամբ շարժվում ճահճի մակերեսով։ Այդ ագրեգատը հաջողությամբ կարող է օգտագործվել նաև գյուղատնտեսության մեջ։ Նա մինչև կես մետր խորությամբ վարում է հողը, միաժամանակ այն մաքրելով թփուտներից։

✪ Մոսկվայի «Կոմպրեսոր» գործարանում ավարտված է նոր, բարձր արտադրողականություն ունեցող կոմպրեսորի արտադրությունը, որը օգտագործվում է ձկնեղենը փչացումից պահպանելու համար։ Նոր կոմպրեսորը կարելի է օգտագործել նաև մետալուրգիական ձեռնարկությունների տաք ցեխերում աշխատանքի նորմալ ջերմաստիճան պահպանելու համար։

★ **Յուրաքանչյուր համաձուլվածքը 850 տոննա.**— «Գիպրոստալի» կողմից նախագծված է աշխարհում խոշորագույն մարտենյան վառարանը, որի տարեկան կարողությունը կազմելու է 725 հազար տոննա (յուրաքանչյուր համաձուլվածքը լինելու է 850 տոննանոց)։

Այդ վառարանի տեխնոլոգիական բոլոր պրոցեսներն ավտոմատացված են։ Վառարանում վառելիքի ծախսը, նույնիսկ նորագույն 500 տոննանոց մարտենյան վառարանների համեմատությամբ, պակասելու է

11 տոկոսով, շահագործման պրոցեսում մեկ երրորդով պակասելու է հրակայուն նյութերի օգտագործումը։

★ **Սիբիրյան նոր հեռուստացույց — «Ենիսեյ—3».** — Նոր հեռուստացույցի առավելությունը մինչ այդ թողարկվածից այն է, որ նա ունի նկարի պարզեցման ավտոմատ կարգավորիչ։ Բացի այդ, նա վեց ու կես կիլոգրամով թեթև է «Ենիսեյ—2»-ից։

★ **Երաժշտական նոր գործիք՝ «Ուեմմի».** —Կարճ՝ այդպես է կոչվում Ուրալի պոլիտեխնիկական ինստիտուտի կողմից ստեղծված ռադիոէլեկտրոնային բազմաձայն երաժշտական գործիքը։

Ի՞նչ է իրենից ներկայացնում այն։

«Ուեմմին» լարեր չունի։ Նրանց փոխարեն տեղադրված են էլեկտրոնային 120 լամպեր։ Այդ նոր գործիքը հանում է երգեհոնի, ֆլեյտայի, ջութակի, մանդոլինայի և երաժշտական այլ գործիքների ձայներ։

Էլեկտրոնային դաշնամուրով արդեն մի անգամ ելույթ է ունեցել Ուրալի Պոլիտեխնիկական ինստիտուտի գեղարվեստական ինքնագործունեության խումբը։ «Ուեմմին» արժանացել է ունկնդիրների բարձր գնահատականին։ Մոտ ժամանակներս այն կուղարկվի Մոսկվա— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հաջողությունների ցուցահանդես։

—◆—



Նշումների համար

Նշումների համար

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## Ն Ո Ր  Գ Ր Ք Ե Ր

Ն. Ս. Խրուշչով — *Դեպի գրականության և արվեստի նոր հաջողություններ*, 53 էջ, գինը 17 կ.:

Սուրեն Արեշատյան — *Հռետորական արվեստի հիմունքները*, 210 էջ, գինը 38 կ.:

Գր. Գրիգորյան — *Գրական-քննադատական ակնարկներ*, 173 էջ, գինը 42 կ.:

Ե. Գ. Զուհարյան — *Սովետական Հայաստանի պատմական հուշարձանները*, 181 էջ, գինը 23 կ.:

Отдел пропаганды и агитации ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 13 1961 г.

ՎՖ 01744 Պատվեր 352 Տպաքանակ 8281

Հանձնված է արտադրության 30/VI 1961 թ.:
Ստորագրված է տպագրության 6/VII 1961 թ.:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:
Գինը 8 կոպ.